*ԼՈՆՏՈՆԻ մէջ ստորագրուեցաւ անգլեւ-իտալական հիւլէական համաձայնագիր մը :*

*ՍՈՒՐԻՈՅ Լաթաքիա նաւահանգիստը հասաւ խորհրդային նաւ մը՝ որ Դա-մասկոսի ռուս մասնագէտներու համար կը տանէր գործիքներ եւ բեռնակառքեր :*

*ԱՐԱԲ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ մէկ պատ-ուիրակութիւնը գնաց Պոն եւ առեւտրա-կան կարեւոր հարցերու շուրջ խորհըր-դակցութիւններ ունեցաւ Նախագահ Հէօ-սի հետ :*

*ՄԱՌԵՇԱԼ ՄՈՆԿՈՄԸՐԻ առջի օր Փա-րիզի մէջ յայտարարեց թէ նոր աշխար-համարտի մը հաւանականութիւնը չկայ առ այժմ.— Պայքարը կը մղուի քաղա-քական ճակտի վրայ եւ դիւանագէտները միայն կրնան լարուած կացութիւնը որոշ չափով մեղմացնել :*

*ՄԱԿի Ափրիկէի տնտեսական յանձնա-խումբին կեդրոնատեղի նշանակուեցաւ Եթովպիոյ մայրաքաղաք Ատիս Ապեպա, որ ստացաւ 11 ձայն՝ երեքի դէմ (Գա-հիրէ) :*

*ԼԻԲԱՆԱՆԻ Հանրապետութեան Նախա-գահին եւ ընդդիմադիր պարագլուխ Համ-րի Ֆարաոնի բնակարաններուն միջեւ առջի օր ռումբ մը պայթեցաւ, ոչ մէկ վնաս պատճառելով :*

*ՍԵՄԻԱՆՈՎ խորհրդային արտաքին կցորդը որ կ'ընկերանար Միկոյեանի Պոնի մէջ, միշտ հիւանդանոցն է: Ինչպէս ծանօթ է Սեմիանով սրտի տագնապէ կը տառապէր եւ վիճակը աւելի ծանր է :*

*ԹՐԻՍՏԱՆ ֆրանսական օդանաւը բարձ-րութեան մրցանիշը կոտրեց 24.400 մեթ-րով: Ցարդ այդ մրցանիշը ամերիկեան էր 23.470 մեթր բարձրութեամբ :*

*ՀԱՅԻԹԻԻ մէջ ալ խռովութիւններ կ'ըլ-լան՝ քաղաքական ճակատի վրայ. վերջին ընտրութիւններէն ետք ընդդիմադիր երեք լրագրողներ բանտարկուեցան. առջի օր նոր միջադէպեր պատահեցան կղզիին մէջ. ոստիկանութիւնը հսկողութեան տակ առաւ ամբողջ Հայիթին :*




Նոր կատարելագործում կօշիկի կրունկներու պատրաստութեան մէջ
*Առաջին հայ հաստատութիւնը որ յաջողած է ձեւընկալի* (մաթիէռ փլաստիք) *եւ* պլիւմինիոմի միացու-*մով շինել անբեկանելի* (էնքասապլը) եւ նկուն կօշիկի կրունկներ ամէն *բարձրութեամբ :*

Դիմել՝

**VANPLAST**

( Վ Ա Ն Լ Ե Ա Ն )

7, RUE GODOT DE MAUROY

Téléphone : OPEra 01-08

*Առաւօտները հեռաձայնել՝* ITA 16-36
» 33-38



# M. Donat

**MÉCANICIEN**

ՄԱՍՆԱԳԷՏ ԿԱՐԻ ՄԵՔԵՆԱՅԻ

Նոր հաստատուած՝

44, RUE D'ENGHIEN
PARIS - X

MÉTRO BONNE NOUVELE TEL. TAI. 80-18

Կը տեղեկացնէ իր յաճախորդնե-րուն թէ իրենց տրամադրութեան տակ է ամէն տեսակ մեքենայի (կարի, *պոււթօնիէռ*, *սիւրժըլթէօզ* կամ սովորական) նորոգութեան կամ վաճառման համար :

ԲԱՑ Է ՇԱԲԱԹ ԱՄԲՈՂՋ ՕՐԸ


**Imprimé sur les presses du journal HARATCH**
—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——

## ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԱԿԱՆՆԵՐ

*Օր. Սոնիա Թաշճեան (Պոռտօ) եւ Պ. Բարունակ Պառաւեան (Տէսին) ամուսնա-ցած՝ 19 Ապրիլ 1958: Կնքահայրութեամբ Տէր եւ Տիկին Վահէ Պառաւեանի :*

*Օր. Սոնիա Թաշճեանի եւ Պ. Բարու-նակ Պառաւեանի ամուսնութեան առթիւ եղած են հետեւեալ նուիրատուութիւննե-րը .— Տէր եւ Տիկին Վահէ Պառաւեան՝ Միակոյթի Տան երեք հազար ֆրանք, Տէսինի դպրոցին երկու հազար :*

*Տէր եւ Տիկին Հայկուհի Թաշճեան՝ Միակոյթի Տան երկու հազար, Տէսինի դպրոցին երկու հազար, Պոռտոյի դպրո-ցին հազար ֆրանք :*

*Տէր եւ Տիկին Միհրան Պառաւեան՝ Միակոյթի Տան, Տէսինի դպրոցին, «Յա-ռաջ»ի բարգաւաճման հազարական ֆր. :*

*Բարունակ Պառաւեան Միակոյթի Տան երկու հազար, Տէսինի Հ. Յ. Դ. Նոր Սերունդին երկու հազար Տէսինի դպրո-ցին հազար ֆրանք :*

*Տէր եւ Տիկին Գուրգէն Պօյաճեան Մը-իակոյթի Տան եւ Տէսինի դպրոցին հազա-րական ֆրանք :*

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ ՕՐԸ
## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Բարձր հովանաւորութեամբ Ֆրանսա-կան Կարմիր խաչին:

*Նախագահութեամբ Ակադեմական* Տօքթ. Թրէմօլիէրի :

*Տեղի պիտի ունենայ 11 Մայիս, կիրա-կի, ժամը 14.30ին*, Սորպոնի մեծ Ամփի-թատրոնին մէջ, 47, րիւ տէ գ'էքօլ, Մէթ-րօ Սէն Միշէլ եւ Օտէօն :

*Սիրայօժար կը մասնակցին .—*

*ԺԱՆ ՊՈՒԱԹԷԼ Քոմէտի Ֆրանսէզէն,*
*ՐԱՖՖԻ ՊԵՏՐՈՍԵԱՆ (դաշնակ),*
*ԱՐՏ. ԳՄԲԷԹԵԱՆ (արտասանութիւն),*
*ՆՈՒԱՐԴ ՏԻՐԱՏՈՒՐԵԱՆ (երգ),*
*ՀԻՒԿԷԹ ԱԺՏԷՐԵԱՆ (դաշնակ),*
*ՊԷՐԹԻԼ ՄԻՒԿԷ (տաւիղ),*
*ՏԸ ՄՕՆՍՕ (թաւջութակ),*
*ԼՕԼԱ ՏԸ ՔԱՍԹՐՕ (սպան. պար),*
*ՍԵՐԺ ՆԱՀԱՊԵՏԵԱՆ (Լը Ժէօն Վիր-թուօզ տը լ'հարմօնիքա),*

*Սօսի պարախումբին կողմէ հայկական պար, ղեկավարութեամբ* Յասմիկ Քիւթ-նէրեանի *եւ* Նայիրի *երգչախումբը, Հա-յաստանեան նոր երգերով, ղեկավարու-թեամբ* Գէորգ Եանըպէկեանի :

*Տոմսերու գինն է 200, 300 եւ 500 Ֆր.:*

*Ապահովել Հայ Կարմիր Խաչի կեդ-րոնատեղիէն, 15 րիւ Ժան Կուժօն, ինչ-պէս նաեւ Հայ Կարմիր Խաչի Փարիզեան շրջանի մասնաճիւղերէն :*

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕԴ. ԿԱՅԱՆ

*Արձանագրութիւնները սկսած են Փա-րիզի շրջանի ինչպէս նաեւ Մարսէյլի եւ Կեդր. Ֆրանսայի մասնաճիւղերը պէտք է սկսին այդ արձանագրութեանց :*

*Մանրամասնութեանց համար դիմել դիւանին*, 5 րիւ Մէյռան, Փարիզ (9), *Երկուշաբթի, Չորեքշաբթի եւ Ուրբաթ կէս օրէ վերջ ժամը 1.30էն 3 եւ երեկոյ-եան ժամը 6 – 7.30:*

*Հեռախօս Թրիւտէն 27-35:*

*«Նոր Սերունդի Օրը» Լիոնի մէջ Մա-յիս 17ին, ժամը 21ին: Մանրամասնու-թիւնները յաջորդով :*

## ՄԱՐԶԱՀԱՆԴԷՍ

*Սամուէլ – Մուրատեան վարժարանի դալարագեղ պարտէզներուն մէջ Մայիս 18ին, Կիրակի ժամը 15.30ին:*

*Սիրով կը հրաւիրուին յարգելի ծը-նողները եւ վարժարանին համակիրնե-րը:*

*Մուտքը ազատ է :*


**MORY et Cie**

ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ

*ԻՆԹՈՒՐԻՍԹ – ՄՈՍԿՈՒԱյէն ստացած է*
*մենաշնորհեալ իրաւասութիւնը ծրարներ ղրկելու*
*Խորհրդային Միութիւն : Բոլոր տուրքերը կը վճարուին ղրկողին կողմէ, ստա-ցողը ոչ մէկ վճարում ունի ընելիք : Ղրկողը ինք կը պատրաստէ ծրարը իր կողմէ գնուած եւ ընտրուած հագուստներով եւ ապրանքներ :*

Սթատար *ծրար չենք պարտադրեր : Սակայն միայն նոր ապրանք կ'ընդու-նինք: Ներկայիս ծրարները աւելի արագ կը հասնին :*
*Բոլոր տեղեկութիւնները կը տրուին հեռաձայնով՝* NOR.40-72et50-83

**10, Rue St-Quentin, Service C, Paris 10**

MÉTRO ET AUTOBUS : GARE DU NORD



## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Ալֆորվիլի, Իսիի եւ շրջանի *քոնֆէքսիօն* ընղներուն եւ հիւսուածներ կազմող-ներուն (*մօնթէօր ան թրիքօ*) .— Կարի ամէն տեսակ դերձաններու համար *Դիմեցէք՝*

**J. GRINFAS, 32, Rue Vaillant-Couturier, Alfortville, ENT. 18-53**

*Ամէնէն աժանը, ամէնէն ճոխը լաւագոյն գիները:*
*Արագ յանձնում, դիմեցէք եւ ձեզի պիտի այցելենք առանց որեւէ պայ-մանագրութեան :*



ՁԵՐ ԴԻՒՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

**ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ**

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹԻՒՆ ԱՆԳԼԻՈՅ ՃԱՄԲՈՎ

ՍՈՎՈՐԱԿԱՆ ՃԱՄԲՈՎ ԿԱՄ ՕԴԱՆԱՒՈՎ

Անգլիական առաջնակարգ ապրանքներ, գործատան գինով: Մաքսային եւ այլ բոլոր ծախքերը վճարուած մինչեւ տեղը հասնիլը :
Կրնաք կազմել ծրարներ զանազան ապրանքներու նոխ ցուցակէ մը :
Դիմողին՝ ցուցակ եւ մանրամասնութիւն :

**SICOMEX** 20, RUE ROYALE, PARIS 8e
TÉL. : OPE. 67-77
MÉTRO MADELEINE C. C. P. 11-964-43





# TERZIAN

*Un Maître dans l'Art du Tricot*

MAISON FONDÉE EN 1928

**3, Rue Poissonnière, PARIS-2e** **Tél.: CEN. 93-75**

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Մկրտիչ Տոլպաշեանի մահուան առթիւ՝ Պաղտասար Տիրատուրեան իր ցաւակցու– թիւնները կը ներկայացնէ այրի Տիկին Տոլպաշեանի եւ զաւակներուն, Տէր եւ Տիկին Յակոբ Տոլպաշեանի եւ զաւակնե – րուն, Տէր եւ Տիկին Վարդան Կատար – եանի եւ զաւակներուն, ինչպէս նաեւ ըն – տանեկան իր բոլոր պարագաներուն եւ փոխան ծաղկեպսակի հազար ֆրանք կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման :

×

Ողբ. Բժ. Յակոբ Սիվրիհիսարլեանի մահուան առթիւ Տոքթ. Աւետիս Ինէ – ճեան (Գերմանիա) կը նուիրէ հազարա – կան ֆրանք Անթիլիի եւ Մոնմորանսիի ծերանոցներուն: (Ստանալ Յառաջէն):

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

«Նոր Սերունդի Օրը» Լիոնի մէջ Մա – յիս 17ին, ժամը 21ին: Մանրամասնու – թիւնները յաջորդով :

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Քրիստափոր խումբի ընդհ. ժողովը այս Երեքշաբթի, ժամը 21ին, Քաֆէ Րեժանի մէջ: Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է : –

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խում– բի ժողովը այս Չորեքշաբթի, ժամը ճիշդ 21ին, 17 րիւ Պլէօ: Ուշացողները նկատի կ'առնուին :

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէին ընդհ. ժողովը այս Չորեքշաբթի, ժամը 20·30ին, Ահարոնեան ակումբը: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

ՊԱՐԱՆՑԻԿ – ՑԵՐԵԿՈՅԹ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Ահարոնեան խումբի կողմէ Այս Կիրակի ժամը 16էն 22 Ազգ. Տան սրահը, 32 րիւ տը Թրէվիզ: Հասոյթը՝ Մշակոյթի Տան :


ԲԱՑԱՌԻԿ ԵՐԵԿՈՅԹ

ԾԻՍԱԿԱՆ ԵՐԱԺՇՏՈՒԹԵԱՆ

ԶԱՆԱԶԱՆ ԺԱՄԱՆԱԿՆԵՐԷ ԵՒ ԵՐԿԻՐՆԵՐԷ

**SALLE GAVEAU, 45, Rue la Boëtie**

Չորեքշաբթի, Մայիս 21, ժամը 21ին

ԼԻՏԻԱ ԿԱՐԻՆ

(Մեծօ – Քոնթրալթօ)

Նելլի քարոն, Կիյոմիթ Պուայէ, Մոնիք Մաթաներ, Լուի Տիլիէս

Մասնակցութեամբ՝ ԼԻԼԻ ԼԱՍՔԻՆԻ Ներկայացնող՝ ԼԻՒՔ–ԱՆՏՐԷ ՄԱՐՍԷԼ

Տոմսերու գին՝ 300էն 1000: Դիմել՝ սրահը եւ Տիւրան (4 Փլաս տը լա Մատլէն) եւ Իշգալացեանի 73 Ֆօպ. Փուասօնիէր Հեռաձայն՝ Փրովանս 64–23


## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ


Ալֆորվիլի, Իսիի եւ շրջանի քոնֆէքսիոն ընողներուն եւ հիւսուածներ կազմող – ներուն (մօնթէօր ան թրիքօ) .— Կարի ամէն տեսակ դերձաններու համար Դիմեցէք՝

**J. GRINFAS, 32, Rue Vaillant-Couturier, Alfortville, ENT. 18-53**

Ամէնէն աժանը, ամէնէն ճոխը լաւագոյն գիները:
Արագ յանձնում, դիմեցէք եւ ձեզի պիտի այցելենք առանց որեւէ պայ – մանադրութեան :



ԹՐԻՔՕ ԺԻՒՍՈՂ ՁԵՌՆԱՐԿՈՒՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

ԱՆՄԻՋԱԿԱՆ ՅԱՆՁՆԵԼԻ ԺՕԺ 12 ԵՒ 14

MACHINE A TRICOTER RECTILIGNE AVEC TRANSFERT DE MAILLE — **ITALBA**

**livrable de suite en jauge 12 et 14**

REMAILLEUSE CIRCULAIRE A I FIL — **ITALBA**

***Sté. NALTA*** **22, Rue de la Sablière**

- G. NALBANDIAN - **PARIS-14 SUF. 96-80**

A LA FOIRE DE PARIS — **ITALBA**

**Terrasse R Hall 130 Stand 130.08**



ՁԵՐ ԴԻՒՐՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

ԾՐԱՐՆԵՐՈՒ ԱՌԱՔՈՒՄ

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՄԻՈՒԹԻՒՆ ԱՆԳԼԻՈՅ ՃԱՄԲՈՎ

ՍՈՎՈՐԱԿԱՆ ՃԱՄԲՈՎ ԿԱՄ ՕԴԱՆԱՒՈՎ

Անգլիական առաջնակարգ ապրանքներ, գործատան գինով: Մաքսային եւ այլ բոլոր ծախքերը վճարուած մինչեւ տեղը հասնիլը :
Կրնաք կազմել ծրարներ զանազան ապրանքներու ճոխ ցուցակէ մը :
Դիմողին՝ ցուցակ եւ մանրամասնութիւն :

**SICOMEX** 20, RUE ROYALE, PARIS 8e
TÉL. : OPE. 67-77
MÉTRO MADELEINE C. C. P. 11-964-43



**MORY et Cie**

ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆԸ

ԻՆԹՈՒՐԻՍԹ – ՄՈՍԿՈՒԱյէն ստացած է մենաշնորհեալ իրաւասութիւնը ծրարներ ղրկելու Խորհրդային Միութիւն : Բոլոր տուրքերը կը վճարուին ղրկողին կողմէ, ստա– ցողը ոչ մէկ վճարում ունի ընելիք : Ղրկողը ինք կը պատրաստէ ծրարը իր կողմէ գնուած եւ ընտրուած հագուստներով եւ ապրանքներ :

Սթատար ծրար չենք պատրաստեր : Սակայն միայն նոր ապրանք կ'ընդու– նինք: Ներկայիս ծրարները աւելի արագ կը հասնին :
Բոլոր տեղեկութիւնները կը տրուին հեռաձայնով՝ NOR.40-72 et 50-83

**10, Rue St-Quentin, Service C, Paris 10**

MÉTRO ET AUTOBUS : GARE DU NORD


ՏԷՍԻՆ.— Տէսնի Կրօն. Ընկերակցու – թիւնս կը փութայ ծանուցանել տէսինա– հայ յարգոյ հասարակութեան թէ, այսօր Կիրակի առաւօտ ժամը 8·30ին Ս. պա – տարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ : Հոգե– հանգստեան պաշտօն պիտի կատարուի հանգուցեալներուն Մարի Սալլապաշեանի եւ Յակոբ Պուտագեանի մահուան քառա– սունքներուն առթիւ:

Կը հրաւիրուին բարեպաշտ ժողովուր – դը, եւ հանգուցեալներուն յիշատակը յարգողները :

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

## Կ'ՈՒԶՈՒԻ

Աշկերտ մը, 16 – 17 տարեկան, չարա– թական 6000 ֆրանք: Դիմել Թաթուլեան,

TATOULIAN - PLOMBERIE
21, Rue Julien Lacroix, Paris


M. Donat

MÉCANICIEN

ՄԱՍՆԱԳԷՏ ԿԱՐԻ ՄԵՔԵՆԱՅԻ

Նոր հաստատուած՝

44, RUE D'ENGHIEN
PARIS - X

MÉTRO BONNE NOUVELE TEL. TAI. 80-18

Կը տեղեկացնէ իր յաճախորդնե– րուն թէ իրենց տրամադրութեան տակ է ամէն տեսակ մեքենայի (կարի, պութօնիէռ, սիւրժըթէօզ կամ սովորական) նորոգութեան կամ վաճառման համար :

ԲԱՑ Է ՇԱԲԱԹ ԱՄԲՈՂՋ ՕՐԸ



Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)





TERZIAN

*Un Maître dans l'Art du Tricot*

MAISON FONDÉE EN 1928

**3, Rue Poissonnière, PARIS-2e** **Tél.: CEN. 93-75**

# ԵՊԻՍԿՈՊՈՍԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐԸ

## — ԵՒ "ՍԻՈՆ"Ի ԱՇԽԱՏԱԿԻՑ Ք.Ի "ՆՇՈՒՄՆԵՐԸ" —

Դ.

Վերտառելով իր յօդուածը «Հայոց եկեղեցւոյ եպիսկոպոսական ժողովներ» խորագրով, «Սիոն»ի աշխատակից Պ. Ք. մտադրութիւն չի ունեցել «ընդարձակօրէն անդրադառնալու նիւթին» եւ գոհացել է անելով միայն մի քանի «նշումներ», որոնց մէջ, վերջին հաշուով, անդրադարձել է նիւթին ըստ էութեան եւ պարզել է որոշ տեսակէտներ:

Այդ տեսակէտներից մէկն էլ այն է, որ «մեր եկեղեցւոյ գոյութեան իրաւունքը անոր տիեզերական եկեղեցւոյ (փակագծի մէջ նշենք, որ քրիստոնեայ եկեղեցու ստորոգելիներն են՝ մի, սուրբ, ընդհանրական եւ առաքելական, բայց ոչ տիեզերական) մաս կազմելուն հիման վրայ կը կենայ մշտապէս» եւ եթէ ընդունի Խոնդկարեանի այն «յիմարական եւ վըտանգաւոր» տեսակէտը թէ «Հայ եկեղեցւոյ ազգայնացումէն առաջ տիեզերական ժողովներու կողմէ տրուած կանոնները ի զօրու չեն Հայ եկեղեցւոյ համար, մեր եկեղեցին տիեզերական եկեղեցւոյ մաս կազմելէ կը դադրի եւ կը դառնայ դատապարտելի աղանդ մը»:

Ուրեմն, ըստ Պ. Ք.ի, Հայ եկեղեցին Տիեզերական եկեղեցւոյ մաս է կազմում:

Իրաւագիտական լուրջ խնդիրներ քննելու ժամանակ ընդունուած չէ գործածել բառեր, առանց այդ բառերի բովանդակութեան տարողութիւնը ճշդորոշելու: Արդ, ի՞նչ պէտի հասկանալ «մեր եկեղեցին Տիեզերական եկեղեցւոյ մաս է կազմում» ասելով: Նախ այն, անշուշտ, որ Հայ եկեղեցին ինքնուրոյն եւ անկախ հաստատութիւն (էնթիթիւսիոն) չէ, այլ ինչ որ յարակցութեան մէջ է գտնւում Տիեզերական եկեղեցու հետ: Բայց ինչպիսի՞ յարակցութեան: Ենթակա՞յ է Տիզերական եկեղեցուն «ի հոգեւորս» եւ «ի վարչականս», թէ դաշնակցային կապերով կապուած հաւասարազօր մի անդամն է հանդիսանում այդ Տիեզերական եկեղեցու: Այս կարեւոր հարցերը բնաւ չեն պարզաբանւում Պ. Ք.ի « մաս կը կազմէ» արտայայտութեամբ: Միւս կողմից եթէ Հայ եկեղեցին մաս է կազմում Տիեզերական եկեղեցու, ապա ինչո՞ւ համար էին միութիւն առաջ բերելու այն նախաձեռնութիւնները, որ պատմութեան զանազան շրջաններում կատարւում էին յոյն եւ լատին եկեղեցիները: Վերջապէս հետաքրքրական է ստանալ Պ. Ք–ից պատասխան այն հարցին, թէ քրիստոնեայ միւս եկեղեցիները, օրինակ յունականը եւ հռովմէականը նոյնպէ՞ս այն կարծիքին են, որ իրենք եւս մաս են կազմում Տիեզերական եկեղեցու եւ եթէ դադրին մաս կազմելուց «կը դառնան դատապարտելի աղանդ մը»: «Տիեզերական պատրիարք» տիտղոսը, որ որդեգրել եւ պահում է ցարդ յոյն եկեղեցու պետը խիստ պերճախօս վկայութիւն է առ այն, որ այդ եկեղեցին ինքն իրեն համարում է ոչ թէ ամբողջի (տիեզերականի) մի մասը, այլ հէնց այդ ամբողջը: Ինչ վերաբերում է կաթողիկէ եկեղեցուն, «արտաքոյ որոյ չիք փրկութիւն», կարծում եմ աւելորդ իսկ է նրա նկատմամբ նման մի հարցադրութիւն:

Որովհետեւ ես հայհոյանքը եւ անարգական խօսքերը համարում եմ թոյլերի զէնք, պիտի չհետեւեմ Պ. Ք.ի օրինակին եւ նրա պաշտպանած սկզբունքը պիտի չկոչեմ «յիմարական»: Պիտի գոհանամ միայն ասելով որ սխալ են Պ. Ք.ի բոլոր հաստատումները այն մասին, որ Հայ եկեղեցին մաս է կազմում Տիեզերական եկեղեցու եւ նրա (Հայ եկեղեցու) գոյութեան իրաւունքը «անոր Տիեզերական եկեղեցւոյ մաս կազմելուն հիման վրայ կը կենայ մշտապէս»:

Գիտեմ որ «եկեղեցական կանոններու հիմնական սկզբունքներուն անտեղեակ Խոնդկարեանի մը» ասածներին կարեւորութիւն պիտի չտայ Պ. Ք., ուստի ըստիպուած եմ վկայակոչել մի այնպիսի հեղինակութիւն, ինչպիսին է Օրմանեանը, որին, ենթադրում եմ, Պ. Ք. չի համարձակուի անտեղեակ համարել «եկեղեցական կանոններու հիմնական սկզբունքներուն», «քրիստոնէական», աստուածաբանութեան եւ եկեղեցական պատմութեան »: —

Նախ «Տիեզերական եկեղեցու» հարցը, որին ըստ Պ. Ք.ի մասն է կազմում մեր եկեղեցին: Օրմանեանի կարծիքով «Տիեզերական եկեղեցի», իբրեւ միասնական կազմակերպութիւն գոյութիւն չի ունեցել նոյնիսկ Նիկիոյ ժողովից առաջ: Միասնական եկեղեցական կազմակերպութեան փոխարէն գոյութիւն են ունեցել վարչականօրէն միմիանցից անկախ եկեղեցական մեծ աթոռներ, որոնցից մէկն է հայ եկեղեցական Աթոռը: «Եթէ չորրորդ դարու սկիզբը, եւ Նիկիոյ ժողովէն, այսինքն 325էն առաջ մեծ աթոռներու մէջ տիրող եկեղեցական յարաբերութեանց պատմութիւնը խղճամիտ կերպով ուսումնասիրենք, գրում է Օրմանեան, պիտի տեսնենք որ երբեք նշան մը կամ յիշատակութիւն մը չկայ, որով մէկ աթոռը միւսին գործերուն միջամտէ, կամ միջամտելուն ենթադրութիւնը արդարանայ: Այս բանն ալ բնաւ զարմանալու կէտ մը չէ, որովհետեւ իւրաքանչիւր եկեղեցական շրջանակ խստիւ սահմանափակուած էր իրեն համապատասխանող եւ իրեն կազմակերպութեան հիմը կազմող քաղաքական շրջանակով » («Հայոց Եկեղեցին», էջ 14): Նոյն էջում Օրմանեան գրում է, որ «Կեսարիոյ աթոռն ալ, ինչպէս նաեւ Անտիոքի եւ Կոստանդնուպոլսոյ պատրիարքութիւններն ալ, ոչ մի պարագայի մէջ, բուն Հայաստան կոչուած սահմաններու վրայ իշխանութեան կամ իրաւասութեան գործ մը կատարած չեն »:

Ուրեմն Հայոց եկեղեցին եղած է միշտ ինքնուրոյն ու ինքնագլուխ եւ մաս չէ՞ կազմած ուրիշ մի եկեղեցու: Այո՛, ասում է Օրմանեանը, «Անոնք (Հայերը) իրենց Աթոռը առաքելական հաստատութիւն կը ճանչնան, իր ծագումէն ինքնուրոյն եւ իր սկիզբէն ինքնագլուխ եղած»: Եւ «Ս. Գրիգորի Կեսարիայէ ձեռնադրութիւն ընդունած ըլլալը, երբեք նուիրապետական կախում ունեցած կամ անոր ենթարկուած ըլլալու փաստ մը չէ» («Հայոց Եկեղեցին», էջ 12): Ազգապատումի մէջ (էջ 691) Օրմանեան գրում է. «Երբեք Հայոց եկեղեցին Յոյներէ ճիւղաւորութեամբ չունեցաւ իր ծագումը, այլ առաքելական քարոզութեամբ եւ անկախօրէն լուսաւորութեամբ եւ ինքնուրոյն կազմակերպութեամբ ստացաւ իր սկզբնաւորութիւնը »:

Եթէ Հայ եկեղեցին եղած է ինքնուրոյն, ինքնագլուխ եւ անկախ ու մաս չի կազմել ու չի կազմում «Տիեզերական Եկեղեցւոյ», ապա ի՞նչպէ՞ս կը լինի որ նա «դատապարտելի աղանդ չի դառնար »: Շատ պարզ: Հայոց եկեղեցու ուղղափառութիւնը «անոր Տիեզերական եկեղեցու մաս կազմելուն հիման վրայ չի կենար », ինչպէս յայտարարում է « քրիստոնէական աստուածաբանութեան» եւ « եկեղեցական պատմութեան» մենաշնորհեալ «մասնագէտ» Պ. Ք., այլ մեր եկեղեցու առաքելականութեան նրա առաքելական ծագումի հիման վրայ: Պէտք է ասել, որ բոլոր քրիստոնեայ եկեղեցիները նոյն պայմանը համարում են ի զօրու իրենց համար:

«Առաքելական ծագումը, գրում է Օրմանեան, որ ամէն քրիստոնեայ եկեղեցիներէ իբրեւ պայման կը պահանջուի, որպէս զի Քրիստոսի՝ եկեղեցւոյ Երկնաւոր հիմնադիրին հետ միացեալ եւ կապակցեալ ըլլալնին հաստատուի, երկու տեսակ է: Մէկը ուղղակի ծագումն է, երբ որ եկեղեցին անմիջապէս առաքեալի մը անձնական քարոզութեամբ սկսած է. միւսը անուղղակի սկսած է երբ որ ծագումը յառաջ եկած է առաքեալներէ հաստատուած ուրիշ եկեղեցւոյ մը միջնորդութեամբ»: Հայոց եկեղեցու ծագումը ուղղակի՞ է, թէ անուղղակի: Այս հարցին շատ յստակ պատասխան է տալիս Օրմանեան վերոյիշեալ քաղուածքի հետագայ տողերով. «Ըստ այսմ Հայոց եկեղեցին ամենայն իրաւամբ կրնայ հոչակել եւ իրեն սեփականել ուղղակի առաքելական ծագումը» («Հայոց Եկեղեցին» էջ 4 – 5): «Եւ առաքելութեան կնիքը Հայոց եկեղեցին ամէն առեն իրեն սեփականացած եւ իւրացած է եւ ամէն պաշտօնական գրութեանց մէջ համարձակօրէն հռչակած է» («Հայոց Եկեղեցին», էջ 4):

Բայց ինչի՞ վրայ կը հիմնուի Հայոց եկեղեցւոյ առաքելական ուղղակի ծագումը: Նրա վրայ, գրում է Օրմանեանը, որ « Հայոց Եկեղեցւոյն նախնական եւ հաստատուն աւանդութիւնը իրեն սկզբնական հիմնադիրներ կը ճանչնայ Ս. Թադէոս եւ Ս. Բարթողիմէոս առաքեալները, զորս յատուկ կոչմամբ ալ Առաջին Լուսաւորիչք Հայաստանեայց (ընդգծուած է բնագրի մէջ) կ'անուանէ: («Հայոց Եկեղեցի», էջ 3):

Ուրեմն Հայոց եկեղեցին, ըստ Օրմանեանի, հէնց սկզբից եղած է անկախ եւ ինքնագլուխ եւ մաս չէ կազմել որեւէ մէկ ուրիշ եկեղեցու: Բայց եւ դրանով նա չի դառել «դատապարտելի աղանդ մը», որովհետեւ եկեղեցու ուղղափառութիւնը կայանում է նրա առաքելականութեան, նրա առաքելական ծագումի մէջ:

Ես իմ յօդուածաշարքի մէջ յարել եմ աւելի տարածուած այն դասական տեսակէտին, որ Հայ Եկեղեցին իր անկախութիւնը եւ ինքնուրոյնութիւնը ձեռք բերաւ յունական եկեղեցուց (կեսարիայից) բաժանուելուց յետոյ: Այս տեսակէտն են պաշտպանում նաեւ Մելիք-Թանգեանը, պրոֆ. Խ. Սամուէլեանը, ականաւոր գիտնական պրոֆ. Ն. Ադոնցը եւ ուրիշները:

Եթէ Պ. Ք. նախապատւութիւն չտար «ամըրգէնով»արուած իմ յօդուածաշարքի ամփոփումին եւ կարդար բուն յօդուածաշարքը՝ գրուած հայերէն լեզւով, կը տեսնէր, որ խօսելով Հայ Եկեղեցւոյ ինքնուրոյնութեան մասին, որ մեր եկեղեցին ձեռք բերաւ յոյն եկեղեցուց բաժանուելուց յետոյ, ես ի նկատի եմ ունեցել առաջին հերթին նրա վարչական ինքնուրոյնութիւնը, տրուած լինելով որ իմ նիւթի համար կարեւոր էր ճշդել մեր եկեղեցու վարչական կազմակերպութեան, նրա բարձրագոյն օրէնսդիր եւ գործադիր մարմինների հարցը:

Հայ եկեղեցու վարչական կազմակերպութիւնը ստացաւ բոլորովին նոր ձեւ, երբ մեր եկեղեցին բաժանուեց յունականից եւ ազգայնացաւ: Իսկ ի՞նչ պիտի հասկանալ «մեր եկեղեցին ազգայնացաւ» ասելով: «Հայ եկեղեցու ազգայնացումը, ասում է պրոֆ. Ն. Ադոնց, կայանում է նրա նախարարացումի կամ աւատականացումի մէջ», այսինքն եկեղեցական կազմակերպութիւնը ստացաւ նոյն ձեւը, ինչ որ արդէն ունէր քաղաքական իշխանութիւնը: «Եկեղեցու նախարարացման պրոցէս»ը սկսուեց կայսերական եկեղեցուց բաժանումով Պապի թագաւորութեան ժամանակ» (Ն. Ադոնց, «Հայաստանը Յուստիանոսի դարաշրջանում», էջ 361, ռուսերէն):

Ուրեմն մեր եկեղեցական պատմութեան եւ եկեղեցական իրաւունքի պատմութեան վրայ յենուելով մեր բոլոր գիտնականները միաբերան վկայում են, որ հայ եկեղեցին բաժանուել է միւս եկեղեցիներից, անկախ եւ ինքնագլուխ է դարձել, բայց գիտունների գիտունը՝ Պ. Ք. յենուելով իր աստուածաբանութեան եւ այն էլ քրիստոնէական աստուածաբանութեան վրայ, յայտարարում է, որ մեր եկեղեցին մաս է կազմում Տիեզերական եկեղեցու եւ եթէ «մաս կազմելէ դադրի կը դառնայ դատապարտելի աղանդ մը»:

Ի՞նչ կարելի է ասել այսպիսի մի պարոնի: Ոչինչ, մանաւանդ որ մեր ասածները ամբողջութեամբ կարդալու սովորութիւն չունի: Ուրեմն մնում է հարցը ուրիշ ձեւով դնել: Մնում է հարցնել թէ ի՞նչ կարելի է անել այսպիսի մէկի հետ:

Ա. ԽՈՆԴԿԱՐԵԱՆ

(Շար.)

# ԿԱՐՏԻՆԱԼ ԱՂԱՃԱՆԵԱՆ Կ'ԱՅՑԵԼԷ Ս. ՂԱԶԱՐ

—o—

(Բ. եւ վերջին մաս)

Մխիթար Աբբահօր շիրիմին վրայ

Ապրիլ 27: Հայրապետական պատարագ, Մխիթար Աբբահօր խնկելի շիրիմին վրայ, ճիշդ իր մահուան 209րդ տարեդարձին օրը:

Բազմաձայն Ներդաշնակ երգեցողութեան հետ, խունկի եւ աղօթքի սլացքովը ապրեցանք յուզումի եւ մխիթարութեան աննման պահեր: Խուռներամ ժողովուրդ ներկայ էր պատարագին որ կը մատուցուէր հայկական ամէնէն նուիրական աւանդութիւններուն համաձայն, ամէնէն սրբազան ու ճոխ զգեստաւորումով եւ հանդիսաւորութեամբ: Ըլլէր Մխիթար իր շիրիմէն ու տեսնէր այսպէս իր շուրջ հաւաքուած ազգ եւ ազգապետ, ժողովուրդ եւ հովուապետ սիրով միացած, հաւատքով ալ սերտօրէն կապուած: Վստահ ենք թէ երկինքէն հրճուեցաւ անոր հոգին ու նորանոր շնորհքներ սփռեց իր տառապեալ ու վշտահար ազգին ցրուած բեկորներուն վրայ:

Յաջորդ օրը, առաւօտեան, վանքին մէջ, նոյն ինքն Մխիթարակերտ գրադարանի դահլիճին մէջ տեղի ունեցաւ գրական յիշատակի հանդէս մը, վանքի աշակերտութեան կողմէ, մասնակցութեամբ Մուրատ Ռափայէլեանի ալ աշակերտութեան, ի պատիւ Մխիթար Աբբահօր: Բանախօսեց աննման ոգեւորութեամբ բանաստեղծ Հ. Վահան վրդ. Յովհաննէսեան, ներկայացնելով Մխիթարի լուսաւոր դիմագիծը եւ հոգին, բազմամեայ տառապանքներու եւ պրպտումներու ընդմէջէն՝ դէպի աղբիւրը լոյսի, դէպի կերտումը սրբութեան եւ գիտութեան այդ փարոսին որ եղաւ Ս. Ղազար: Յատկապէս յիշատակեց այն ժամանակի վարդապետներէն Խաչատուր վարդապետը, որ գիտցած է գնահատել Մխիթար Աբբահօր ծրագիրն ու գործը, յուզումով ողջունեց յանձին մեր Ծիրանաւոր Պատրիարքին, մերօրեայ Խաչատուր վարդապետը, բուռն ծափերու մէջ հանդիսականներուն:

Ուխտին Աբբահայրը հակիրճ ներկայացուց նախ իր շնորհակալութեան խօսքը առ Հայրապետն մեր, որ բարեհաճած էր իր շնորհաբեր այցելութեամբ կրկնապատկել մեր ուրախութիւնը այս նուիրական օրերուն:

Պատրիարքութեան քսանամեակը

Աբբահայրը շարունակելով իր խօսքը, երջանիկ առիթը նկատեց այս յիշատակը ներկայացնելու ամբողջ Մխիթարեան Միաբանութեան շնորհաւորութիւնները, անոր պատրիարքութեան քսանամեակին առիթով: Արագօրէն սահեցաւ անոր քըսանամեայ պատրիարքութեան զանազան շրջաններուն վրայէն, վեր հանելով այն շինարար դերը, զոր կատարած է ան Հայ կաթողիկէ համայնքին մէջ, զայն օժտելով նոր եկեղեցիներով, դպրոցներով, կղերանոցով, նոր թեմերու հաստատութեամբ եւ մամուլով: Նկատեց զինքը իբրեւ Քրիստոսական ճշմարիտ հովիւ մը որ խօսած է տոհմային հայրապետներու լեզուով ու շեշտով: Յարեց մաղթանքի անկեղծ ու սրտաբուխ արտայայտութիւններ. եւ աւարտեց սրտագին բաղձանքով մը, կրկնելու երէկուան սքանչելի պատարագը, այս անգամ ոչ թէ Մխիթար Աբբահօր շիրիմին վրայ, այլ անոր խորանին առջեւ:

Դրուատիք Մխիթար Աբբահօր

Խանդավառ ծափերու մէջ խօսք կ'առնէ Հայրապետը: Նախ շնորհակալութիւն կը յայտնէ իր անձին հանդէպ եղած այն մաղթողական ու սիրալիր արտայայտութիւններուն համար, մի առ մի կը թուէ այս եռօրեայ տօնակատարութեան զանազան հանդրուանները, նուիրական պահեր, վերանորոգումի պահեր, հաւատքի եւ ազգային ոգիի: Եւ աւելցուց թէ ինքն ալ ուխտաւորի մը նման եկած է Մխիթար Աբբահօր շիրիմին: «Ի մանկութենէ, ըսաւ, գրաւուած եմ անոր գաղափարականէն, եւ յարաճուն յարգանքի, մեծարանքի եւ նուիրումի զգացումներ են որ տարիներէ ի վեր հետզհետէ կ'ընդարձակուին, ծնանելով իմ սրտին մէջ միանգամայն խոր ցաւ մը, վիշտ մը, իրական տառապանք մը, թէ ինչու Մխիթար Աբբահայր իր ժամանակին չհասկցուեցաւ ինչպէս որ պէտք էր:

« Այս նուիրական յիշատակը առիթ մըն է միանգամայն վերանորոգելու մեր առաջադրութիւնները հաւատարիմ մնալու Մխիթար Աբբահօր կտակին, որ անմահ կտակ է: Մխիթար Աբբահօր գործը սկըսած է Ս. Աստուածամօր մէկ Եղիցիով՝ Ասիկա մեծ քաջալերութիւն է մեզի համար, որովհետեւ այդ Եղիցին յարատեւ կը կրկնուի, բաւ է որ մեր մէջ գտնէ այն նոյն ոգեւորութիւնը, նուիրումը, չարքաշութիւնը, որով օժտուած էր Մըխիթար Աբբահայր:

ԱՄԵՐԻԿԱ հինգ միլիոն տոլարի բրինձ պիտի տայ Ինտոնեզիոյ կառավարութեան, ինչպէս նաեւ թեթեւ զէնքեր՝ ոստիկանութեան համար եւ օդանաւի գործիքներ՝ 500.000 տոլար արժէքով: Միւս կողմէ Ճաքարթայի կառավարութիւնը մերժեց բանակցիլ Սումաթրայի ըմբոստներուն հետ :

ՍՈՒՐԻ (Լիբանան) մարոնիթ Առաջնորդը՝ Տումիթ մեկնած է Իսրայէլ. լաւատեղեակ աղբիւրներ կը հաղորդեն թէ Առաջնորդը Լիբանանէն չէ փախած, այլ՝ այցելութիւն մը կուտայ Իսրայէլի մարոնիթ համայնքին :

ԿԻՊՐՈՍԻ յոյն ազգայնականներու պարագլուխ Մակարիոս Արք. հրաւիրուած է Լոնտոն՝ Քէնթըրպըրիի Արք.ին կողմէ :

ՆԱՍԸ յառաջիկայ չաբաթ Դամասկոս պիտի երթայ «կարեւոր պատճառ»ի մը համար :

ՀՆԴԻԿ այրի մը, հետեւելով աւանդութեան, իր երկու զաւակներուն հետ նետուեցաւ ամուսնոյն դիակին հրկիզման խարոյկին մէջ :

---

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Սէն Ժերոմի Հ. Յ. Դ. Հայաստան ենթակոմիտէին ընդհ. ժողովը այս Շաբաթ երեկոյ, ընկեր Սիմոնեանի բնակարանը: Կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի պիտի առնուին :

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Հ. Յ. Դ. «Անտոք» ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, Հայ մատրան սրահը : Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է :

ՄԱՐՍԷՅԼ.— Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրացի մասնաճիւղի Բ. ընդհ. անդամական ժողովը այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին, (13 բիւ Թիւպանօ, Օբէլ Րաֆֆի) : Խիստ կարեւոր օրակարգ:

---

### «ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ» ՕՐԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ ԲԱՑԱՌԻԿ ԵՐԵԿՈՅ ՄԸ

Այսօր Շաբաթ, ժամը 20.30ին, «Օհանջանեան»սրահին մէջ,Րիւ Գիւվիէ, Վիէն:

Կը մասնակցին Նոր Սերունդի 10րդ համագումարին առթիւ Ֆրանսայի բոլոր մասնաճիւղերը :

Գեղարուեստական խնամուած բաժին : Ձոխ պիւֆէ, հաճելի անակնկալներ, ընկերային ջերմ մթնոլորտ :

Պիտի ըլլան նաեւ հայկական եւ եւրոպական երգեր, արտասանութիւններ, խմբերգներ եւ այլն :

Մուտքը ազատ է :

---

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ...

Աղքատախնամի տարեկան ղաշտահանդէսի առթիւ, Մոնմօրանսիի հանգստեան տան պարտէզին մէջ, տեղի ունենալիք կէսօրուան ճաշին համար շատ քիչ սեղաններ մնացած են, փութացէք արձանագրուիլ :

---

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Արամ Ջիլինկիրեան, Տէր եւ Տիկին Անժէլ Սրապեան, Տէր եւ Տիկին Վահէ Պէչիրեան, Տէր եւ Տիկին Լեւոն Պէչիրեան կը ծանուցանեն որ այս կիրակի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ, իրենց եղբօր եւ զարմիկին Նշան Ջիլինկիրեանի մահուան քառասունքին առթիւ: Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

×

Այրի Տիկին Թագուհի Պարոնվարդեան, Օր. Սիլվա Պարոնվարդեան, Պ. Արա Պարոնվարդեան կը ծանուցանեն թէ այս կիրակի Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ հոգեհանգիստ պիտի կատարուի իրենց ողբացեալ ամուսնոյն եւ հօր Հրանդ Պարոնվարդեանի յիշատակին, իր մահուան քառասունքին առթիւ: Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները :

---

### ՍԳՅ

Այրի Տիկին Թագուհի Գուլումեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ երեքշաբթի, Մայիս 27ին, առաւօտեան ժամը 9ին Սէն Ժիւլիէնի գերեզմանատան մէջ իրենց ամուսնոյն եւ հօր՝ ԿԱՐԱՊԵՏ ԳՈՒԼՈՒՄԵԱՆԻ դագաղը պիտի փոխադրուի ընտանեկան դամբարանը :

Imprimé sur les presses du Journal HARATCH
— 17. Rue Bleue. 17 — PARIS (9e) —

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕՐԸ

Ֆրանսահայ Կապոյտ Խաչի Մարսէյլի Շրջ. վարչութիւնը իր բոլոր մասնաճիւղերով կը տօնէ Կապոյտ Խաչի օրը, այս կիրակի կէսօրէ վերջ ժամը չորսէն մինչեւ կէս գիշեր, Սալոն Մազընոյի մէջ, Րիւ տ'Օպանեը :

Կը նախագահէ Տիկ. Հ. ՇԱԼՃԵԱՆ
Կը խօսի Տիկ. ԷԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ :

Երգ՝ Օր. Արզումանեան, դաշնակի ընկերակցութեամբ Օր. Լիլի Գազանճեանի: Արտասանութիւն՝ Օր. Ա. Սարգիսեան, Կարտանի Նոր Սերունդը ղեկավարութեամբ Պ. Ն. Սարգիսեանի կը ներկայացնէ զաւեշտ մը :

Եւրոպական պարերը կը սկսին ժամը 8ին: Նուագախումբ՝ ԱՆԺ ՔՈԼԹԷՅ
Մասնակցութեամբ ԱՆՐԻ ՌՈՄԱՆԻ
Պիւֆէն մատչելի գիներով :

---

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Նախաձեռնութեամբ Ալֆորվիլի Հայ Երիտասարդութեան եւ հովանաւորութեամբ Եկեղեցւոյ Պատուարժան Հոգաբարձութեան :

Ի նպաստ Ալֆորվիլի եկեղեցիին կից կառուցուելիք Ազգային Տան :

Կը ներկայացուի «ՏԱՑԻ ԿԱՐԱՊԵՏ »
Զաւեշտ երեք արար Քրէմ Սիմոնի
Այս Շաբաթ երեկոյ ժամը 9ին:
Մէզոն Ալֆորի քաղաքապետարանին սրահին մէջ :

---

Նախաձեռնութեամբ Սեբաստիոյ Նահանգային Մուրատ Ուսումնասիրաց Միութեան : Հայկական խօսուն եւ զուռնաւոր ժապաւէններու չարժանկարի երեկոյթ, այս երեքշաբթի ժամը ճիշդ 21ին:

Սինէ Ալհամպրայի մէջ, Ավընիւ ժան Ժոռէս (Իսի):

Կը ներկայացուի ԼԵՌՆԱՅԻՆ ԼՃԻ ԳԱՂՏՆԻՔԸ, Հայկական երգապնակներ՝ (Անուշէն, Դաւիթ Բեկէն, Արշակ Բ.էն եւ Ա. Խաչատուրեանի Գայեանէէն):

Մուտք 300 ֆրանք :

Ներկայացման իրիկունը տոմսերը կը չէն : Իջնել Մէթրօ Մէրի տ'Իսի :

---

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ
8 bis, Rue des Ternes

Մէթրօ Փորթ Մայյօ կամ Շամփէրէ

Այս Կիրակի ժամը 11.15ին : Կը խօսի վերապատուելի ՍԻՍԼԵԱՆ: Նիւթ՝ «Հոգին ամէն ճշմարտութեան պիտի առաջնորդէ ձեզ» :

---

### ՀՐԱՒԷՐ

Ֆ. Բանակի Նախ. Հայ Կամ. եւ Ռազ. Բարեկամական Միութեան Կեդր. վարչութիւնս Միութեան բոլոր անդամները կը հրաւիրէ ընդհ. ժողովի այս Կիրակի առաւօտ ժամը 9.30ին, Պար տիւ Կլօպի մէջ, Պուլվ. տ'Աթէն, Մարսէյլ:

Ժողովին ներկայ պիտի ըլլայ Միութեան պատուական նախագահը Պ. Շ. Տ. Թէքէեան: Օրակարգի հարցեր. — Ընթերցում տեղեկագրի, հաշուետուութիւն եւ ընտրութիւն նոր վարչութեան :

ԹՐԻՔՕ ՀԻՒՍՈՂ ՁԵՌՆԱՐԿՈՒՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ
ԱՆՄԻՋԱԿԱՆ ՅԱՆՁՆԵԼԻ ԺՕԺ 12 ԵՒ 14

MACHINE A TRICOTER RECTILIGNE
AVEC TRANSFERT DE MAILLE — ITALBA
livrable de suite en jauge 12 et 14

REMAILLEUSE CIRCULAIRE A I FIL ITALBA

Sté. NALTA 22, Rue de la Sablière
- G. NALBANDIAN - PARIS-14 SUF. 96-80

A LA FOIRE DE PARIS ITALBA
Terrasse R Hall 130 Stand 130.08

Հիմնադիր-Տնօրէն ԳՐԻԳՈՐ ԹԵՒԱՆԵԱՆ
ՃԱՇԱՐԱՆ ԵԱՐ
Ֆրանսական – հայկական եւ կովկասեան ընտիր կերակուրներ

4, RUE ROBERT-ETIENNE
(Rue Marbeuf) PARIS-8e
TÉL. : BAL. 31-21
ՇԱՆ Զ'ԷԼԻԶԷԻ ՍՐՏԻՆ ՎՐԱՅ
Métro : F. D. Roosevelt

Հաճելի մթնոլորտ

Առաջնակարգ կովկասեան խորոված – ներ, «շաշլիք», «քարսքի»
Bar Américain



ETABLISSEMENTS
G. HAGOPIAN
Կ. ՅԱԿՈԲԵԱՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ
10 Rue du Caire, Paris 2. Tél.: CEN. 78-44 et CEN. 66-96



ՇԱՏ ՅԱՐՄԱՐ ԳԻՆԵՐՈՎ ԿԸ ԾԱԽԷ ՀԵՏԵՒԵԱԼ ԱՊՐԱՆՔՆԵՐԸ, ՄԵԾԱՔԱՆԱԿ ԵՒ ՓՈՔՐԱՔԱՆԱԿ
ԿԵՐՊԱՍ ԷՆԹԵՐԼՈՔ INTERLOCK — ԿԵՐՊԱՍ ԺԱՔԱՐ JACQUARD
ԿԵՐՊԱՍ ՄԱՅ ԱՆԿԼԷԶ MAILLE ANGLAISE — ԿԵՐՊԱՍ ՄԱՅ ՍՈՒԻՍ MAILLE SUISSE
ԿԵՐՊԱՍ ՖԻԼ Տ'ԷՔՈՍ FIL D'ECOSSE



ԻՐԵՆՑ ԶԱՆԱԶԱՆ ՏԵՍԱԿՆԵՐՈՎ ԵՒ ԳՈՅՆԵՐՈՎ
ՇԻՆՈՒԱԾ ԵՒ ՊԱՏՐԱՍՏՈՒԱԾ ԹՐԻՔՕՅԻ ԱՊՐԱՆՔՆԵՐ
ՎԵՐՋԻՆ ՆՈՐԱՁԵՒՈՒԹԻՒՆՆԵՐՈՎ



ԿԸ ԾԱԽԷ ՆԱԵՒ ՋՈՒՏ ԲՈՒՐԴԷ ԴԵՐՁԱՆ 2-28, 2-40
ԵՒՂԵԱՆ ԲՈՒՐԴՈՎ 1-26, 1-40

ՇԱՏ ՅԱՐՄԱՐ ԳԻՆ
ԵՒ ՎՃԱՐՈՒՄԻ ԼԱՅՆ ԴԻՒՐՈՒԹԻՒՆՆԵՐ

